ISSN 1829-054X

«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ

## 17

խմբագրությամբ՝
Ս. ԱՐԵՎՇԱՏՅԱՆԻ



«ՄԱԳԱՂԱԹ»
ԵՐԵՎԱՆ 2006

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

ՍԵՆ ԱՐԵՎՇԱՏՅԱՆ

## ԱՍՏՎԱԾԱՇՈՒՆՉԸ ԵՎ ՀԱՅ ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ՄԻՏՔԸ

*Աստվածաշունչը, նրա Հին և Նոր կտակարանները մեծ ազդեցություն են ունեցել հայերի հոգևոր կյանքի գրեթե բոլոր բնագավառների վրա: Այն վճռական դեր է խաղացել նաև հայ փիլիսոփայական մտքի ձևավորման գործում: Իր համապարփակ, հանրագիտարանային բնույթով Աստվածաշունչը շոշափում էր այն ժամանակվա հասարակական գիտակցության բոլոր ասպեքները՝ բարոյականությունը, իրավունքը, փիլիսոփայությունը, պատմագրությունը, հասարակական-քաղաքական միտքը և այլն: Սուրբ Գիրքը նոր կրոնի գրավոր հիմքն էր, առանց որի այն չէր կարող հաստատորեն արմատավորվել և հարատևել: Հին և Նոր կտակարանների հայ թարգմանիչները ապահովեցին քրիստոնեության վերջնական հաղթանակը Հայաստանում: Աստվածաշնչից վերընձյուղեցին նոր աշխարհայացքի բոլոր ճյուղերը, էությամբ ու բովանդակությամբ նոր հավատի և նոր գիտության բնագավառները: Հայ թարգմանիչները առաջին լուրջ փորձը կատարեցին բազմաթիվ ու տարաբնույթ գրական ու գիտական բնագավառների տերմինաբանության ստեղծման ուղղությամբ:*

*Աստվածաշունչը դարձավ կրթության բոլորովին նոր, հնից էապես տար-*

բերվող դպրոցի հիմքը, մի դպրոց, որի բովով պարտավոր էր անցնել յուրաքանչյուր ուսյալ քրիստոնյա: Եթե նկատի ունենանք այն հեղինակությունը եւ ուժը, որն ավատատիրական հասարակության մեջ ուներ եկեղեցին, եւ այն անվիճելի փաստը, որ եկեղեցու ձեռքում էր գտնվում ողջ կրթական, գրական եւ քարոզչական գործը, ապա պարզ կդառնա Աստվածաշնչի դերը միջնադարյան գրականության եւ գիտության զարգացման ասպարեզում, մանավանդ վաղ ավատատիրության շրջանում, երբ քրիստոնեության ընդունումից հետո, հատկապես գրերի գյուտից հետո, եկեղեցու հայրերի նախաձեռնությամբ, անմիջական մասնակցությամբ ու հսկողության ներքո դրվեցին գրավոր մշակույթի, գրականության եւ գիտության հիմքերը: Այդ ժամանակաշրջանի բոլոր հեղինակների մտածելակերպը, աշխարհայացքը ներթափանցված եւ հագեցած էր Սուրբ Գրքի բովանդակությամբ: Ամեն մի գիտնական, մեկնիչ ու մտածող, իսկ այդպիսիք լինում էին վարդապետները եւ եկեղեցու այլ սպասավորները, պարտավոր էր իր մտքերը համաձայնեցնել Աստվածաշնչի դրույթների հետ, իսկ յուրաքանչյուր շեղում դիտվում էր որպես միտումնավոր կամ ակամա հերետիկոսություն: Այդ հանգամանքը, հասկանալի է, չափազանց կաշկանդում էր մտքի ազատ զարգացումը եւ վերածում գիտությունը եկեղեցու սպասավորի, հատկացնում փիլիսոփայությանը բիբլիական դրույթների մեկնաբանողի, «աստվածաբանության աղախնի» դեր, որը եւ սիրով ու ներքին համոզմամբ բարեխղճորեն կատարում էին ինչպես հայ, այնպես էլ այլ եկեղեցիներին պատկանող փիլիսոփաները եւ գիտնականները[1]:

Եկեղեցական, աստվածաբանական մտածողության կնիքն արդեն իսկ կար թարգմանության ենթակա գործերում, վերջինս իր արտահայտությունն էր գտել այն գրականության ընտրության մեջ, որը պետք է թարգմանվեր առաջին հերթին, եւ, բնականաբար, հայ հեղինակների առաջին ինքնուրույն ստեղծագործություններում:

Սահակ Պարթեւի եւ Մեսրոպ Մաշտոցի, իսկ այնուհետեւ նրանց ավագ եւ կրտսեր աշակերտների ջանքերով ստեղծված բազմահարուստ թարգմանական գրականության ետնախորքի վրա հստակորեն ուրվագծվում է մի որոշակի ծրագիր, որը թարգմանչաց դպրոցի կողմից ընդունվել էր ի ղեկավարություն: 405 թվականից մինչեւ 460 թվականը, այսինքն՝ գրաբարի դասական շրջանում կատարված թարգմանությունները կարելի է հստակորեն տեղադրել ըստ քրիստոնեական գիտության եւ դպրության այն ժամանակ ընդունված դասակարգման ութը բաժինների.

---

[1] Տե՛ս Gilson E., La philosophie au Moyen Age (Des origines patristiques a la fin du XIV siècle). Paris, 1952, pp. 9-14.

ա) աստվածաշնչագիտություն (բիբլիկա),

բ) մեկնաբանություն (հերմենևտիկա),

գ) ջատագովություն (ապոլոգետիկա),

դ) արարողագիտություն (լիտուրգիկա),

ե) հայրաբանություն (պատրիստիկա),

զ) սրբախոսություն (հագիոգրաֆիա),

է) կանոնագիտություն (կանոնիկա),

ը) պատմություն (հիստորիա)[2].

5-րդ դարի առաջին կեսի հայ դպրության քննությունը այդ դասակարգման լույսի տակ ցույց է տալիս, որ հայ գործիչների գրական-թարգմանչական աշխատանքը իրականացվում էր ոչ թե տարերայնորեն, այլ մտածված, նախապես մշակված պլանով եւ հետապնդում էր որոշակի հստակ նպատակ՝ թարգմանությունների միջոցով, հնարավորին չափ կարճ ժամկետում, ստեղծել նախադրյալներ սեփական, ազգային եկեղեցական գրականության համար, որն անհրաժեշտ էր հայոց եկեղեցու գրքերի ամրապնդման համար:

Այդ ծրագրի համաձայն, որը Սահակ Պարթեւի եւ Մեսրոպ Մաշտոցի կողմից դրվել էր թարգմանչաց դպրոցի գործունեության հիմքում, առաջին հերթին անհրաժեշտ էր իրագործել Աստվածաշնչի թարգմանությունը, քարդ եւ իր կառուցվածքով բազմաշերտ մի հուշարձանի, որը հանդիսանում էր պաշտոնապես ընդունված կրոնի հիմքը: Ծրագրի կարեւորագույն առաջին կետը՝ բիբլիկան, սկսեց իրականացվել գրերի գյուտից անմիջապես հետո, եւ այն, որպես հրատապ հասարակական, գիտական, գրական, եկեղեցական մի խնդիր, երեք տասնամյակ՝ 405-435 թվականներին, գտնվում էր ուշադրության կենտրոնում, մինչեւ որ հիմնականում չիրագործվեց երկրորդ, վերջնական թարգմանությունը:

Ծրագրի երկրորդ կետն ընդգրկում էր Աստվածաշնչի տարբեր մասերի, նրա Հին եւ Նոր կտակարանների մեկնաբանությունը, որն անհրաժեշտ էր Սուրբ Գրքի էության, կարեւորագույն դրույթների եւ առհասարակ քրիստոնեական ուսմունքի ճիշտ ըմբռնման համար: Ծրագրի այդ բաժինն սկսեց կատարվել առաջին կետի հետ գրեթե միաժամանակ: Թարգմանչաց դպրոցի գործունեության 40-50 տարիների ընթացքում թարգմանվեցին մեծ թվով մեկնողական գործեր, որոնք պատկանում էին եկեղեցու ճանաչված հայրերի գրչին, ինչպիսիք էին Բարսեղ Կեսարացին, Հովհան Ոսկեբերանը, Եփրեմ Ասորին, Կյուրեղ Ալեքսանդրացին եւ այլ մեծ հեղինակություններ:

---

[2] Տե՛ս Ակինյան Ն., Դասական հայերենը. Վիեննա, 1932, էջ 26-27: Տե՛ս նաեւ Аревшатян С. С., Формирование философской науки в древней Армении. Ереван, 1973, с. 40-43.

Մեկնության հետ սերտորեն կապված էր ջատագովությունը՝ ծրագրի երրորդ բաժինը, որի նպատակն էր հեթանոս կրոնի և աշխարհայացքի հետևորդների հարձակումներից քրիստոնեական ուսմունքի պաշտպանությունը, քրիստոնեական ուսմունքի արդարացումը և փիլիսոփայական հիմնավորումը՝ այլ կրոնների հետ մղած պայքարում: Ջատագովության գծով թարգմանվեցին Արիստիդես Աթենացու, Մեթոդիոս Ոլիմպացու, Եպիփան Կիպրացու, Հիպպոլիտի և այլոց երկերը: Ջատագովների աշխատություններում առավել ցայտուն էր դրսևորվում քրիստոնեության փիլիսոփայությունը, որը իրեն հակադրում էր անտիկ փիլիսոփայությանը և պոլիթեիզմին, հատկապես մատերիալիստական ուսմունքներին: Հունական ջատագովների բացած ճանապարհով ընթացան և առաջին հայ մտածողները, Մեսրոպ Մաշտոցը և Եզնիկ Կողբացին, որոնք իրենց ինքնուրույն երկասիրություններում առատորեն օգտագործել են նույն ջատագովների երկերը :

Այնուհետև, ըստ վերը նշված ծրագրի, հնագույն թարգմանությունները խմբավորվում են հետևյալ բաժիններով. պաշտոնեգրության-արարողագիտության նյութին վերաբերող գրականություն (պատարագամատույց, ժամագիրք և այլն), հայրաբանություն (եկեղեցու հայրերի քարոզագիտական երկեր, ճառեր, թղթեր, կրոնափիլիսոփայական խորհրդածություններ), սրբախոսություն (սուրբ հայրերի, անվանի քրիստոնյաների վարքեր և հավատքի համար զոհվածների վկայաբանություններ), կանոնական երկեր (եկեղեցական ժողովների և եկեղեցու հեղինակավոր գործիչների կողմից սահմանված կանոններ, որոշումներ, կանոնական սահմանագրություններ), պատմական երկեր, որոնք նվիրված են եկեղեցու պատմությանը, նրա ձևավորմանը, հեթանոսության դեմ մղած պայքարին ու հաղթանակին, տարբեր երկրների և ժողովուրդների պատմության լուսաբանմանը՝ աստվածաշնչյան դրվագների և եկեղեցու պատմության կարևոր փուլերի ետնախորքերի վրա):

Այս հարուստ և բազմաբնույթ թարգմանական գրականությունը մեծ դեր խաղաց հայ փիլիսոփայության ձևավորման գործում: Այն հանդիսացավ յուրատեսակ մի դպրոց ինքնուրույն երկերի ստեղծման համար, նպաստելով ժամանակի կենսական նշանակություն ունեցող, հոգևոր ու գիտական լիցք կրող գաղափարների, հասկացությունների և տերմինաբանության բյուրեղացմանը:

Եթե մինչև 430-ական թվականների կեսերը հայ գործիչների հիմնական ուշադրությունը կենտրոնացված էր թարգմանությունների վրա, ապա 430-ական թվականներից և հատկապես 40-ական թվականներին, երբ նախանշված թարգմանությունների մեծագույն մասը արդեն կատարված էր, գրական ասպարեզում երևան են գալիս հայ հեղինակների գործերը, գրված

նույն դասական հայերենով, որը բնորոշ է նշված հնագույն շրջանի թարգմանություններին:

Հայ հեղինակների՝ մինչև 430-ական թվականների երկերին են պատկանում «Սահակ Պարթևի կանոնները», «Հաճախապատում ճառերը»: 430-ական թվականներին հրապարակի վրա էին Ագաթանգեղոսի անունով հրապարակված «Հայոց պատմության» առաջին, հնագույն տարբերակը և Սահակ Պարթևի Թղթերը՝ ուղղված Պրոկլ և Ակակիոս եպիսկոպոսներին:

440-ական թվականներին են ստեղծվել Կորյունի «Մաշտոցի վարքը», Շահապիվանի կանոնները և Եզնիկ Կողբացու «Եղծ աղանդոցը»:

Բոլոր այդ հնագույն հայկական երկերը ճշտորեն համապատասխանում են այն ծրագրին, որը դրված էր թարգմանական գործունեության հիմքում: Նրանք իրենց հերթին հիմք հանդիսացան հայ ջատագովության, հայրաբանության, վարքագրության, կանոնագիտության և պատմագրության համար:

Այդ երկերից Աստվածաշնչի ուղղակի օգտագործմամբ և նրա կարևորագույն դրույթների արծարծմամբ աչքի են ընկնում «Հաճախապատում ճառերը», «Գրիգոր Լուսավորչի վարդապետությունը» և «Եղծ աղանդոցը», հայ ջատագովության և հայրաբանության ամենակարևոր հուշարձանները: Նրանց հեղինակները, Մաշտոցն ու Եզնիկ Կողբացին հայ փիլիսոփայական մտքի հենց ակունքներում, ինչպես քրիստոնեական փիլիսոփայության հիմնադիրները, հետապնդել են երկու հիմնական նպատակ: Առաջինը՝ քրիստոնեության կարևորագույն դրույթների հիմնավորումը և նրանց փիլիսոփայական-աստվածաբանական մեկնաբանումը: Ակնհայտ է հեղինակների ձգտումը իրագործել հայրաբանության հիմնական խնդիրը, այն է՝ փիլիսոփայորեն ըմբռնել կրոնական դոգմաները, ամրապնդել հավատը բանական փաստարկներով և ընդունելի դարձնել մտքի համար: Երկրորդ նպատակը՝ քրիստոնեական ուսմունքի հիմքերի պաշտպանությունը տարբեր հեթանոսական պատկերացումների հետ մղած պայքարում, քրիստոնեական մոնոթեիզմի դիրքերից հերքել պարսից կրոնը, նրա դուալիստական ուսմունքը:

Հայրաբանական ուղղության մեջ հստակ ձևավորվել է քրիստոնեական փիլիսոփայության՝ Աստվածաշնչի վրա հիմնված մեկնողական բնույթը, նրա ուղղվածությունը հակադիր ուսմունքների և այլ կրոնների դեմ: Այդ բնույթը և քննադատական մեթոդը շատ լավ ձևակերպել է Եզնիկ Կողբացին, հատուկ շեշտելով, որ «Աստծո եկեղեցու գործն է արտաքիններին հերքել առանց Ս. Գրքի օգնության, իսկ ներքիններին՝ կարծեցյալ և մոլորյալ (քրիստոնյաներին) մերկացնել Ս. Գրքի միջոցով»[3]:

[3] Եզնիկ Կողբացի, Եղծ աղանդոց. Թիֆլիս, 1914, էջ 78:

Այդ սկզբունքը լայնորեն կիրառվում էր ողջ միջնադարի ընթացքում, սկսած Մեսրոպ Մաշտոցից, Եզնիկից ու Եղիշեից, այսինքն՝ հայ ջատագովության եւ հայրաբանության ձեւավորման շրջանից մինչեւ Հովհան Որոտնեցի եւ Գրիգոր Տաթեւացի: Միջնադարյան փիլիսոփայության մեկնողական բնույթը, աստվածաբանությանը ծառայելու, կրոնական ճշմարտությունները փիլիսոփայորեն քննելու եւ հիմնավորելու ձգտումը եղավ բավականին արգասավոր: Այդ փիլիսոփայությանը հատուկ ավանդապաշտությունը եւ հեղինակապաշտությունը, մոտավորապես մեկ հազարամյակ նույն խնդիրների արծարծումը պարտադրում էր հայ մտածողներին նորից ու նորից քննել ու մեկնաբանել Աստվածաշունչը, օգտագործելով եւ հայ դասականներին, եւ թարգմանությունների շնորհիվ հարազատ դարձած հույն եւ ասորի քրիստոնյա մտածողների ժառանգությունը, ինչպես նաեւ քրիստոներեն ընկալված անտիկ փիլիսոփայության ներկայացուցիչներից Պլատոնի, Փիլոն Աղեքսանդրացու ու Պլոտինի գաղափարները[4]:

Քրիստոնեական փիլիսոփայությունն իր բոլոր հիմնական կարեւորագույն դրույթներով եւ բնորոշ հատկանիշներով հենվում էր Աստվածաշնչի վրա եւ զարգացնում նրա գաղափարները՝ մեկնողական սկզբունքով: Բայց ոչ բոլոր գրքերը հավասարապես: Հայրաբանության ամենավաղ շրջանից սկսած քրիստոնյա տեսաբանների եւ գաղափարախոսների ուշադրությանն էր արժանացել Աստվածաշնչի հենց առաջին կոթողը՝ Ծննդոց գիրքը, որը ծնել ու սնել է փիլիսոփա-աստվածաբանների տիեզերաբանությունը: «Վեցօրյա արարչագործությանը» նվիրված մեկնաբանությունները պարունակում են միջնադարի քրիստոնյա փիլիսոփաների տիեզերաբանական խորհրդածությունները, աշխարհի արարման գաղափարը, որը քննվում եւ լուսաբանվում է բուն արարչի գաղափարի հետ միասին: «Ծննդոց գրքի» առաջին, երկրորդ եւ երրորդ գլուխները հիմք եւ ելակետ են հանդիսացել միջնադարյան փիլիսոփայության համար, բնորոշելով նրա իմաստաբովանդակային, գաղափարախոսական այնպիսի առանձնահատկությունները, ինչպիսիք են ստեղծապաշտությունը (կրեացիոնիզմ), միաստվածականությունը (մոնոթեիզմ) եւ նախախնամապաշտությունը (պրովիդենցիալիզմ), ինչպես եւ քրիստոնեական տիեզերաբանությունը (կոսմոգոնիա) եւ մարդաբանությունը (անթրոպոլոգիա): Ցայտուն ձեւով այդ առանձնահատկությունները դրսեւորվել են «Հաճախապատում ճառերում», շատ վաղ թարգմանված եւ հայ փիլիսոփաների համար հարազատ դարձած Բարսեղ Կեսարացու «Վեցօրեայք»-ում, «Գրիգոր Լուսա-

[4] Ավելի մանրամասն տե՛ս Аревшатян С. С., Формирование философской науки в древней Армении, сс. 119-131, 150-153, 225-227.

վորչի Վարդապետություն»-ում, Եղիշեի «Արարածոց մեկնության» մեջ: Շուրջ մեկ հազարամյակ, մինչեւ Գրիգոր Տաթեւացու «Հարցմանց գիրքը» եւ նրա հանձնարարությամբ գրված Մատթեոս Ջուղայեցու «Վեցօրեա արարչության մեկնությունը», այդ հիմնախնդիրները եղել են հայ իմաստասերների ուշադրության կենտրոնում, հարստացնելով հայ փիլիսոփայության շտեմարանը:

«Հնգամատյանի» մյուս գրքերում՝ Ելից, Ղեւտացոց եւ Երկրորդ Օրենքում պարունակվող գաղափարները, ինչպիսիք են՝ Աստծո էության, նրա անիմանալի լինելու, աստվածահաճո վարքի եւ բարոյականության, հնազանդության, Արարչին անվերապահորեն ընդունելու եւ հավատալու հիմնադրույթները կազմեցին ողջ միջնադարյան, այդ թվում եւ հայ քրիստոնեական փիլիսոփայության առանցքը: Նույն այդ գաղափարներն ավելի մանրամասն քննվում են Հին կտակարանի մյուս գրքերում, հատկապես խրատական (դիդակտիկ) եւ մարգարեական գրքերում, որոնցից առավել շատ մեկնությունների էին արժանացել Հոբի գիրքը, Եսայու մարգարեությունը, Դավթի Սաղմոսները, Սողոմոնի Առակաց, Ժողովողի եւ Իմաստության գրքերը:

Մեկնողական գրականության մեջ, քարոզներում եւ ճառերում եռդասական շրջանի հեղինակների մոտ, Հովհան Մանդակունուց, Մամբրե Վերծանողից սկսած մինչեւ Ներսես Շնորհալի եւ Լամբրոնացի, այնուհետեւ Հովհաննես Երզնկացի եւ Տաթեւյան դպրոցի իմաստասիրող վարդապետներ, քննվում եւ մեկնաբանվում են վերոնշյալ գրքերից բխող գաղափարները, այն է՝ դեպի իմաստություն եւ գիտություն տանում է հավատը, իմաստության աղբյուրը Աստծո խոսքն է, Աստված մի է եւ միասնական, նա է ամեն ինչի արարիչն ու տերը, որ ստեղծել է տիեզերքը իր հղացած ծրագրով, ստեղծել է մարդուն իր նմանությամբ ու կերպարանքով, ստեղծել է նրան անձնիշխան, ազատ կամքով, չարն ու բարին զանազանելու եւ ընտրություն կատարելու կարողությամբ՝ հավերժական կյանքի համար, իսկ մահը եկավ սատանայից՝ նրա գայթակղություններին ենթարկվելու պատճառով, մարդն ինքը պատասխանատու է իր մեղքերի համար, որոնք պետք է քավի բարի գործերով: Երկրային կյանքը ունայն է, «ունայնութիւն ունայնութեանց, ամենայն ինչ ընդունայն է»: Առաքինի, իմաստուն եւ աստվածավախ հավատացյալների տանջանքները եւ մեղսագործ, չարագործ մարդկանց անպատիժ ապրելը ժամանակավոր են, հանդերձյալ ահեղ դատաստանը բոլորին կհատուցի ըստ արժանվույն, աստվածային գերիմաստությունը նախախնամությամբ վարում է մարդկության պատմությունը[5]:

[5] Տե՛ս Майоров Г. Г., Формирование средневековой философии. Москва, 1979, сс. 37-38, 42.

Հին կտակարանից եկող այս գաղափարները մեծապես ազդել են քրիստոնեական փիլիսոփայության և աշխարհայացքի ձևավորման վրա, նրա տիեզերաբանական, գոյաբանական, մարդաբանական հասկացությունների և ուսմունքների վրա:

Ինչ վերաբերում է Նոր կտակարանին, ապա այն հանդիսացավ քրիստոնեական փիլիսոփայության բարոյագիտության հիմքը: Մատթեոսի Ավետարանի մեջ պարունակվող Լեռան քարոզը բարոյական նոր ուսմունքի, աշխարհը հեզաշրջող, հուդայականությանը հակադրվող սիրո փիլիսոփայությունը դարձավ աստվածաբան-փիլիսոփաների միտքն անընդհատ սնող աղբյուր: Քրիստոնեության բերած սիրո հասկացությունը, նրա վրա հիմնված բարոյական նոր ուսմունքը դարեր շարունակ մնաց միջնադարյան մտածողների և բանաստեղծների ներշնչանքի կիզակետում, հատկապես խորհրդապաշտ փիլիսոփաների և պոետների համար: Փիլիսոփայական առումով ոչ պակաս կարևոր են նաև Հովհանու Ավետարանը և Պողոս առաքյալի Թղթերը: Այդ հոգևոր մատյաններից իրենց գաղափարներն էին քաղում միջնադարի քրիստոնյա փիլիսոփաները, Հովհաննու Ավետարանից` մարմնացված աստծո, Քրիստոս-Մեսիայի` լոգոսի նույնացման մասին, աստվածային խոսքի, մտավոր լույսի վերաբերյալ ուսմունքը, իսկ Պողոսի Թղթերից` ազատության և նախախնամության, բնության և աստվածային շնորհի, գիտության և հավատի առնչակցության վերաբերյալ բուն քրիստոնեական գաղափարները, դարձնելով դրանք բազմաթիվ խորիմաստ և նրբահյուս մեկնությունների առարկա[6]:

Ի վերջո պետք է նշել, որ հայ փիլիսոփայական միտքը, ինչպես և այլ միջնադարյան քրիստոնյա ժողովուրդների փիլիսոփայությունը, արդեն իր ձևավորման շրջանից օգտվել ու հարստացվել է հելլենիստական փիլիսոփայության համահունչ գաղափարներով, հատկապես աշխարհի վերջալույսին ծնված Նորպլատոնական ուսմունքից: Այդ տեսակետից հայ իրականության համար բնորոշ էր Դավիթ Անհաղթի դերը, մի փիլիսոփայի, որը կապող օղակ հանդիսացավ անտիկ աշխարհի գիտության և քրիստոնեական փիլիսոփայության միջև[7]: Նրա շնորհիվ փիլիսոփայության ինքնուրույնությունը պահպանվեց իմացաբանության և տրամաբանության ոլորտներում, թեև նրանք էլ ի վերջո օգտագործվում էին նույն աստվածաշնչական ճշմարտությունների բանական հիմնավորումների համար: Աշխարհիկ ճյուղն իր

---

[6] Տե՛ս նույն տեղում, էջ 44-45:

[7] Տե՛ս Արևշատյան Ս., Դավիթ Անհաղթը` հին Հայաստանիականավոր փիլիսոփա: Երևան, 1980, էջ 45-49, 60-63, 97-102:

հարաբերական ինքնուրույնությունը պահպանեց մինչեւ միջնադարի վերջը, չձուլվելով կրոնափիլիսոփայության հետ։

Հարուստ մեկնողական գրականությունը, որ հայ իրականության մեջ ստեղծվեց Աստվածաշնչի գաղափարների բացատրության եւ հիմնավորման համար, դարձավ հայ հոգեւոր մշակույթի արժեքավոր բաղադրիչը, փիլիսոփայական մտքի կողմից հայոց եկեղեցուն եւ մշակույթին բերած մեծարժեք ավանդը։